# ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ—ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

Ա. ՏԱՐԻ, ԹԻՒ 3 ՖՐԷԶՆՕ, ՔԱԼ., ՄԱՐՏ, 1918 ԳԻՆ ՏԱՍԸ ՍԷՆԹ




ԿԱՐՄԻՐՆ ՎԱՐԴԱՆ

## ՎԱՐԴԱՆ ԶՕՐԱՎԱՐ

Բուն բարեկենդանի Հինգշաբթին մեզի համար տարուան մեծագոյն օրերէն մին եղած է դարերէ ի վեր: Պոլսոյ և երբեմն ուրիշ տեղեր ալ «Վարդան Զօրավար» դրած էին այդ օրուան անունը: Եկեղեցական և դպրոցական բարեպաշտիկ ու խանդավառ հանդէսներ ամէնուրեք տեղի կունենային այդ օրը: Մեր վրայ իշխող բռնապետական կառավարութիւնը թէպէտև դէպի վերջին ժամանակները այդ օրուան համար սովորական եղած ներկայացումներուն չափ դրած և շատ բոլորովին արգիլած էր, բայց Պոլսոյ մէջ այդ օրուան Հայկական խանդավառութիւնը շուկայի կեանքին վրայ անգամ ազդած էր ու վերջին տարիներս «Վարդան Զօրավար»ին օրը դրամատուները փակ կըլլային: Ս. Գրիգոր Լուսաւորչէն մինչև Ս. Ներսէս Շնորհալի որ ազգային վերջին տօնեցեալներէն կը համարուի, չունինք սուրբ մը, որ այնքան զօրեղ կերպով տպաւորած ըլլայ ամբողջ ազգը և ազդած ըլլայ անոր զգացումներուն վրայ: Մեր դարավերջին բանաստեղծներուն մեծագոյն և ընտրելագոյն մասին ճշմարիտ մուսան եղաւ Վարդան. անով ներշնչուեցան ու անոր նուիրեցին իրենց լաւագոյն արտադրութիւնները, և անհամար են անոնք, գերազանց մին քան զմիւսն: Եկեղեցին «Նորահրաշ» և անոր կցորդ ռազմաշունչ և հոգենուագ շարականներ ձօնելով Վարդանի և իր հետ ինկող բոլոր Հայ կտրիճներուն, յաւերժացուցած է անոնց յիշատակը: Ժողովուրդի բոլոր խաւերէն՝ առանց բացառութեան՝ հաւասարապէս սիրուած ու փառաբանուած է «Վարդան Զօրավար:»: Աւարայրի ճակատամարտին մէջ ինկած օրէն, Հայ տուներուն մէջ, դպրոցներու ու եկեղեցիներուն մէջ, ամէն մէկ Հայու սրտին մէջ ապրած է Վարդանի հոգին, ու ոչ ոք պիտի կրնայ փաստել անոր հակառակը: Ցաւալին այն է որ այդ հոգիները չենք կրցած միացնել իրարու հետ որով չենք յաջողած կազմել Վարդանական միութիւն մը: Եթէ մենք գիտնանք միաւորուիլ Վարդանի հոգիին շուրջ, ինչպէս գիտցան Վարդանանք պարսկական հայակուլ յարձակման դէմ, ան ատեն էր գործած պիտի ըլլայ մեծ հրաշքը: «Յայնմ ժամանակի, կըսէ Եղիշէ, սփռեցան եղբայրակիցքն յիւրաքանչիւր իշխանութիւնս, և տարեալ զգործակիցսն ի գեօղս և յագարակս և ի քաղաքս ամուրս լեռնային գաւառացն: Դրդեցին ժողովեցին զբազմութիւն արանց և կանանց, շինականաց և ազատաց, դասհանայից և զմենակեցաց. խրատ եդին, զինեցին և արարին զամենեսեան զինուորս Քրիստոսի»:

Եւ ի՞նչ պատմական երանելի ժամանակ մըն էր այդ, երբ չկան թերթեր, չի կան կուսակցութիւններ, չկան գործիչներ միութիւն աղաղակող, եւ միութիւնը ինքնին կը ծնի, ինքնին կը մեծնայ, կ՚ուռճանայ միակ կուսակցութեան, միակ անուան տակ, ՀԱՅ: Ինչո՞ւ չենք ուզեր հասկնալ գաղտնիքը այդ հզօր միութեան. ինչո՞ւ չենք տեսներ արդիւնքը անոր: Այսպիսի միութիւն մըն է որ կը մաղթենք մեր նորածին Հայ Ազգային Միութեան: Միութիւն մը որ կազմուած ըլլայ ոչ թէ իրարու ներհակ բաժանեալ հատուածներէ, այլ այնպիսի անհատներէ որոնք Հայ և Քրիստոնեայ անուններէն զատ՝ տարբեր բացատրութիւն մը չունենային, ինչպէս էին Վարդանանք: Այսպիսի միութիւն մը կրնայ ստեղծել այն հրաշագործ զօրութիւնը որուն մենք կը բաղձանք, ու այդ զօրութիւնն է որ պիտի ծնուցանէ ազգային և կրօնական միակ դաւանանք մը: Ինչպէ՜ս վսեմ ու ինչպէ՜ս սիրալի էր Վարդանանց միութիւնը: Մանուկէն մինչև ծերը, կանայք և աղջիկունք, եկեղեցականք և աշխարհականք մէկ մարմին և մէկ հոգի կազմած, մէկ անունով շարժեցան, Հայութիւն, միակ հաւատքով զօրացան ու զինուեցան, Քրիստոնէութիւն, ու այդ երկու անուններով հմայուած գրեցին չար Յազկերտին այն հռչակաւոր պատասխանը որ հայ տառապանաց տարեգրութեան մէջ պիտի մնայ ու յաւերժանայ, Հայրենիքի և Եկեղեցւոյ պաշտպանութեան համար, դէպի մահ դիմողներու ամենափառաւոր դրօշակը: «Յայսմ հաւատոյ զմեզ ոչ ոք կարէ խախտել, ոչ հրեշտակք և ոչ մարդիկ, ոչ սուր, ոչ հուր, ոչ ջուր, ոչ ամենայն գինչ եւն զանհարուածք: Ամենայն ինչ և ստացուածք մեր ի ձեռս քո, և մարմինք մեր առաջի քո կան, բառ կամաց քոց արա զինչ և կամիս: . . . Ի քէն տանջանք, և ի մէնջ յանձնառութիւնք, սուր քո, և պարանոցք մեր»: Ինչո՞ւ մենք այսպիսի միացեալ պատասխան մը մեր դահիճներուն, և կամ տար մէկ տարբեր ձեր անոնց, որոնցմէ կը սպասենք մեր իրաւունքն ու արդարութիւնը: Այսպիսի միաբանութենէ մը կախուած է մեր ազգին ներկայ ցաւերուն դարմանը և ապագայ երջանկութիւնը: Վարդանանց միութեան մէջ էր եկեղեցւոյ հեղինակաւոր իշխանութիւնը, Յովսէփ Կաթողիկոս, քահանայութիւնը՝ Ղեւոնդ Երէց, Հայ ազատանին, նոյն ինքն Վարդան և այլ նախարարք և ամբողջ ժողովուրդը, առանց սեռի և տարիքի խտրութեան: Ահա թէ ինչ կը գրէ նոյն ժամանա-

գիրը. «Մի սիրտ յօժարութեան ամենեցուն արանց և կանանց, ծերոց և տղայոց և ամենայն միաբանելոց ի Քրիստոս։ Քանզի առ հասարակ զմի զինուորութիւն զինուորեցան, և զմի ագան զրահս հաւատոյ պատուիրանին Քրիստոսի, և միով զօտեաւ ճշմարտութեան պնդեցին զմէջս արք և կանայք։»

Տարակոյս չկայ թէ մեծ խանդավառութեամբ կը հանդիսաւորենք անոնց տարեդարձը և երախտագիտութեամբ կ'արտասանենք իրենց օրհնեալ անունները, բայց ջանալու ենք որ անոնց հոգիներն ալ մեզմով ապրին յաւիտենականութեան մէջ. և ասիկայ կըլլայ պաշտելով և պաշտպանելով այն հաւատքն ու Եկեղեցին որ իրենց կեանքովը գնելով աւանդ թողուցին մեզի։ Բազում անգամ կրրկնուած և անհերքելի իրականութիւն մըն է թէ Եկեղեցին է մեր ազգին այսքան հալածանքներէ և խաչելութիւններէն անցնելէ յետոյ՝ դեռ կարենալ ապրելու գաղտնիքը։ Ասկէց աւելի պարզ ու յստակ ճշմարտութիւն չի կրնար ըլլալ։ Այս մասին ժամանակակից ամենէն զօրեղ փաստն այն է որ Նոր Յազկերտը, Սուլթան Համիտ, տեղ տեղ կոտորեց զմեզ, իր երկաթեայ թաթը տարածեց մեր վաճառականութեան, ընկերական յարաբերութեանց, գրականութեան, մամուլին ու դպրոցներուն ալ վրայ, բայց չի կրցաւ մօտենալ եկեղեցւոյ սեմէն ներս, ուր կ'երգէինք, կ'երգենք ու միշտ պիտի երգենք երգը «Վարդան Զօրավարին».



## ՇԱՐԱԿԱՆ ՎԱՐԴԱՆԱՆՑ

Հեղինակ —Ս. ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ

* * *

Նորահրաշ պսակաւոր և զօրագլուխ առաքինեաց,
Վառեցար զինու Հոգւոյն արիաբար ընդդէմ մահու,
Վարդա՛ն, քաջ նահատա՛կ, որ վանեցեր զթշնամին,
Վարդագոյն արեամբդ քո պսակեցեր զեկեղեցի։

Երկնաւոր թագաւորին զինու յաղթեալ պատերազմին,
Խոհական իմաստութեամբ խոհեմացեալ անճառապէս,
Խորէ՛ն, խորհրդական և ծանուցեալ անուն բարի,
Խաչելոյն վկայ եղեալ հեղմամբ արեան պսակեցաւ։

Բնական լուսով լցեալ արիացեալն քաջն Արտակ,
Թաթաւեալ ի կարմրութիւն բոսորային բղխեալ յաղբերն,
Զփրկականն ըմպեալ զբաժակ և մկրտեալ արեամբն իւրով,
Դասակցեալ ընդ անմարմնոցն Երրորդութեանն երգել զփառս։

Սրբափայլ զգեստուք պճնեալ ի յերկնաւոր հանդիսադրէն,
Երրորդութեամբն զօրացեալ վանեալ զամուրս բանսարկուին,
Հմայեակ հօր ընծայեալ, որդւոյ գոլով չարչարակից,
Հոգւոյն յաղթեալ պատերազմին և չարասէր թագաւորին։

Էական բարւոյն գիտամամբ ընդդէմ մեղացն վառեցաւ,
Տարագնաց եղիք յերկիրս պարակցեալ ընդ անմարմնոցն,
Տաճար զարմանալի տաճար եղեալ Երրորդութեանն,
Տէրունեան սուրբ խորհրդոյն տուն և տեղի արժանացեալ։

Սուացեալ զհաւատոյ վահան, յուսոյն զրահիւք ծածկեալ
Զփրկականն սաղաւարտ ի գլուխ եդեալ զնշան Խաչին,
Վահան վեհ երեւեալ որ մանկութեամբ նահատակեալ,
Խաչելոյն վկայ եղեալ պսակեցաւ արեամբն իւրով։

*Ի հոտ անուշ ողջակիզեալ մատուցանէր զինքն նուէր,*
*Բանաւոր պատարագաւ ընծայելով Հօր ի յերկինս,*
*Արքէնքն ցանկալի արդարութեամբն ճոխացեալ,*
*Իմաստութեամբ պայծառացեալ յեօթնարփեան շնորհաց հոգւոյն:*

*Երկոքումբք հարազատօք ընտրելագոյն նահատակօք*
*Յառաջացեալ յամենայնոց գլուխ և աւարտ մարտիրոսաց,*
*Նախաշաւիղ գոլով բարեաց յառաջադէմն զարեգին*
*Ընկալեալ զբրաբիոնն յաղթանակ նահատակացն:*

*Բամկական խումբ հազարաց և երեսնից թիւ ընդ վեցից,*
*Որք ընդ նորին նահատակեալ արիաբար պատերազմաւ,*
*Եւ հեղին զարիւնս իւրեանց ի նորոգումն եկեղեցւոյ,*
*Ընդ նմին պսակելով ի յերկնաւոր հանդիսադրէն:*

*Գոհութեամբ փառաւորութիւն Երրորդութեանդ նուագեմք*
*Եկեղեցիք Հայաստանեայց պայծառապէս զարդարեցան,*
*Բազմութեամբ պսակելոցս զմեօք մածեալ տաճարնեացս,*
*Ունելով միշտ բարեխօս զճգնութիւն մարտի սոցա:*



---

ՃՈՒԽ ՄԸ ԽՈՒՆԿ ԱՍՊԵՏԻՆ

(Վարդանանց Յիշատակին)

Առիւծաքաշ երիվարդ պատրաստ է
Ու ցեղիդ հետ կըսպասէ,
Կամքիդ է՝ որ տ՚ունն ու տաճա՛ր, արահետ
Կըսէն, «զարթնի՛ր ով Ասպետ:»

Բուրվառին մէջ միայն ցուլ մը կը մխա՛յ,
Ու լերանց մէջ հեռակա՛յ,
Կը դեգերի որբուկ կըմախքը խաչին՝
Որպէս բազկիդ հի՜ն դարնին:

Վեհ կարողկէն պիտ՝ վերածնի՞ միշտ անհետ.
Պատգամէ՛ մեզ ո՜վ Ասպետ.
Ու հաւատքիդ անպարտելի տեսիլքով . . .
Տա՛ր մեզ Կատարն յաղթերգով:

Նայի՛ր մեզի, մենք մաշուա՜ծ ենք ու քաղցա՜ծ
Բայց դեռ ունինք բուռ մը կայծ.
Որ ո՛վ Ասպե՜տ, Տաճարիդ մէջ պիտ՝ վառուի՜
Մինչեւ ցեղը Վերածնի . . . :

Տր. Վ. Գ. Թաշճեան

## ՎԱՐԴԱՆԻ ՃԱՌԸ



### Աւարայրի ճակատամարտէն առաջ

Շատ պատերազմներու մէջ մտած եմ ես և դուք ալ ինծի հետ, երբեմն քաջապէս մենք կը յաղթէինք թշնամիներուն և երբեմն անոնք մեզի կը յաղթէին, բայց շատ անգամ յաղթած ենք քան թէ յաղթուած: Սակայն այն ամէնը մարմնոյ պարծանք էր, որովհետև անցաւոր թագաւորին հրամանով կը կռուէինք: Ով որ փախչէր, վատանուն կը համարուէր աշխարհի մէջ և թագաւորէն անողորմ մահ կրստանար, իսկ ով որ յաջողութեամբ յառաջ կ'անցնէր՝ իր տոհմին մէջ քաջ անուն կը ժառանգէր և մեծամեծ պարգևներ կըստանար անցաւոր ու մահկանացու թագաւորէն: Եւ ահա մեր ամէնքս ալ իւրաքանչիւրս շատ վէրքեր ու սպիներ ունինք մեր մարմիններուն վրայ և շատ ալ քաջութիւններ ըրած ենք, որու համար և մեծամեծ պարգևներ ստացած ենք: Անարգ և անօգուտ կը համարիմ այս բոլոր քաջութիւնները, և ոչինչ՝ այս պարգևները, որովհետև ամէնքն ալ պիտի փճանան:

Իսկ արդ եթէ մահկանացու հրամանատարին համար կը կատարէինք այդքան քաջութիւններ, որչափ ևս առելի մեր անմահ թագաւորին համար, որ կենդանիներու և մեռեալներու տէրն է և իւրաքանչիւր մարդ իր գործերուն համեմատ պիտի դատէ: Եթէ շատ ապրինք ու ծերանանք ալ դարձեալ անշուշտ պիտի զատուինք այս մարմնէն, որպէս զի մտնենք կենդանի Աստուծոյ մօտ, որմէ ալ բնաւ պիտի չզատուինք:

Այժմ կ'աղաչեմ ձեզ, ո՛վ իմ քաջ նիզակակիցներս,, մանաւանդ որ ձեզմէ շատերը քաջութեամբ վեր էք ինձմէ և հայրենի գահով բարձր, բայց երբ դուք ձեր յօժար կամքով առաջնորդ ու զօրագլուխ կարգեցիք զիս, թող ախորժելի ու բաղձալի թուին իմ խօսքերս ձեր ականջներուն, մեծերուն և փոքրերուն: Չվախնանք, չսարսափինք հեթանոսներու բազմութենէն և մահկանացու մարդոց ահագին սուրին դէմ թիկունք չդարձնենք, որպէս զի եթէ Տէրը յաղթութիւն պարգևէ մեզ սատկեցնենք անոնց զօրութիւնը՝ որ ճշմարտութեան կողմը բարձրանայ, իսկ եթէ հասած է ժամանակը, որ այս պատերազմիս մէջ սուրբ մահով վերջացընենք մեր կեանքը, ընդունինք ուրախ սրտով, միայն թէ մեր քաջութեան մէջ վատութիւն չխառնենք:

Մինչև հիմա երկու և երեք կռիւներու մէջ Տէրն ինքը մեծ զօրութեամբ օգնեց մեզ, այնպէս որ քաջութեան անուն ժառանգեցինք և թագաւորի զօրքը չարաչար կոտորեցինք, մոգերն անխնայ սատկեցուցինք, և այլ տեղերէ կռապաշտութեան պղծութիւնը մաքրեցինք, թագաւորին անօրէն հրամանը սուրի տակ առինք, ծովի խռովութիւնը հանդարտեցուցինք, լեռնացած ալիքները իջան, դաշտացան, բարձրաղէզ փրփուրն սպառեցաւ, գազանացեալ կատաղութիւնը դադրեցաւ: Նա որ ամպերու վրայէն կ'որոտար խեղճացաւ և ամբարտաւանութենէն աւելի խոնարհելով խօսեցաւ մեզի հետ: Նա որ միայն բերանացի հրամանով կուզէր իր չարութիւնը կատարել սուրբ եկեղեցիի վրայ, հիմա աղեղով, սուրով և նիզակով կը կռուի: Նա որ կը կարծէր թէ մենք քրիստոնէութիւնը միայն հագուստի պէս հագած ենք, հիմա չկրնար փոխել ինչպէս մեր մարմնոյն գոյնը և թերևս պիտի չկրնայ ալ մինչև վերջը: Որովհետև անոր հիմերը անշարժ վէմի վրայ դրուած են հաստատ կերպով, ոչ թէ երկրի վրայ՝ այլ երկնքի մէջ, ուր ոչ անձրևներ կ'իջնեն, և ոչ քամիներ կը փչեն և ոչ ալ հեղեղներ կը ծագին: Եւ մենք թէպէտև մարմնով երկրի վրայ ենք, այլ հաւատքով երկինքն ենք շինուած, ուր ոչինչ կրնայ հասնիլ Քրիստոսի անձեռագործ շինուածքին:

Հաստատ կեցէք մեր անկասկածելի զօրագլխուն վրայ, որ երբեք պիտի չմոռնայ ձեր քաջագործութիւնները: Ո՛վ քաջեր, մեզ համար ասիկա մեծ շնորհ մըն է, որ կատարեց Աստուած մեր մարդկային բնութեան ձեռքով, որու մէջ նաև Աստուծոյ զօրութիւնը կերևի մեծապէս: Որովհետև եթէ ուրիշները կոտորելով աստուածային օրէնքին վրայ, մեզ համար պարծանք ժառանգեցինք և մեր ազգատոհմին քաջ անունը թողուցինք եկեղեցիին, և իւրաքանչիւրին վարձքը Տիրոջմէն է, որ իւրաքանչիւրին համար պահուած է իր սրտի փափաքին և իր գործերուն համեմատ, որչափ ևս առելի եթէ մենք մեռնինք մեր Տէր Յիսուս Քրիստոսի մեծ վկայութեան վրայ, որուն երկնաւոր հրեշտակներն ալ կը փափաքէին եթէ միայն հնար ըլլար: Եւ այս պարգևներն ալ ամէնուն չեն տրուիր, այլ անոնց՝ որոնց համար պատրաստած է Բարերար Տէրը, և մեզ կը շնորհուին անոնք ոչ թէ մեր արդար գործերուն համար, այլ աննախանձ Պարգևատուին Գթութեամբը, ինչպէս և կըսէ սուրբ Կտակարաններու մէջ թէ ուր որ

*մեղքն աւելի եղաւ հոն և Աստուծոյ շնորհքը աւելցաւ:*

*Եւ մեզի համար շատ ու շատ կը յարմարի այս պատուիրանին իմաստը, ինչպէս որ առաւելապէս ամբարշտացած երեւցանք մարդոց աչքին, կրկնապատիկ աւելի արդարացած կերեւանք մարդոց, հրեշտակներու և ամենուն հօր առջև: Որովհետև այն օրը որ լսեցին մեր գործին մասին, շատ արտասուք թափուեցաւ մեզ համար սուրբ եկեղեցիներու մէջ, և աւելի ևս մեր սիրելիներուն մէջ: Մինչև անգամ մեր ընկերները զայրացած արով կ'ազատնային մեզ, և կուզէին դատն մահ տալ մեզ և մեր ծառաներն ալ կը խորշէին և կը փախչէին մեզմէ:*

*Հետաւոր մարդիկ, որ առաջուց ծանօթ էին մեր քրիստոնէութեանը մեր վրայ կ'ողբային անդադար և անգիտութեամբ շատ անարգանքով կը խօսէին մեր մասին, որովհետև ընաւ տեղեակ չէին մեր խորհուրդներուն: Աւելի մեծն բանն, ոչ միայն մարդիկ երկրիս վրայ, այլ և հրեշտակները երկինքի մէջ իրենց երեսը դարձուցին մեզմէ, որ տխուր դէմքով չնայէին մեր վրայ:*

*Եւ հիմայ եկաւ հասաւ ժամանակը որ ամէն կեղտ անուն վերցնենք մեր վրայէն: Այն ժամանակ վշտալի սգաւորի նման հոգւով ու մարմինով տրտմած էինք, այսօր երկուքովն ալ անհատապէս զուարթացած և զգաստացած ենք, որովհետև Բարերար Տէրը կը տեսնենք, որ մեզ կ'առաջնորդէ, մեր զօրավարը մարդ չէ, այլ բոլոր մարտիրոսներու զօրագլուխը:*

*Երկիւղը թերահաւատութեան նշան է, թերահաւատութիւնը մենք վաղուց ի բաց մերժած ենք, թող այժմ երկիւղն ալ փախչի մեր մտքէն և մեր խորհուրդներէն:*

**ԵՂԻՇԷ**

---

## ԼՈՒՐ ՏՈՒՐ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՀՈՎՈՒԻՆ

*Երբ տունիդ կամ ծանօթներուդ մէջ հիւանդ կայ:*

*Երբ գիտես թէ բանտարկեալ մը կայ:*

*Երբ գիտես թէ խռովեալներ կան:*

*Երբ գիտես թէ նորեկ կայ:*

*Տեղափոխութեան պարագային՝ նոր հասցէդ:*

Բնակարանի հասցէ՝ 2143 Վէնթուրա ավնիւ,—

—Թէլէֆօն 4138- W—

---

## ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԴԱՐՁ

*1917 Մարտ 8ի գիշերը Լօս Անճէլըսի Հայ Աւետարանական Եկեղեցւոյ պաշտօնեաներուն համար յաւէտ յիշատակելի գիշեր մնայ: Այդ իրիկունն էր որ տեղւոյն Եպիսկոպոսականաց հոյակապ եկեղեցւոյն մէջ, ի ներկայութեան խուռն բազմութեան, Լօս Անճէլըսի համար քահանայ ձեռնադրեց Բարգէն Եպիսկոպոս Կիւլէսէրեան, Ս. Երուսաղէմի նախկին միաբան Միհրան Մէլիքեան, կոչելով զնա Տէր Աստ. որով Լօս Անճէլըսցիք ունեցան իրենց երրորդ բայց տեղւոյն հետ պատկեալ առաջին քահանան: Լօս Անճէլըսի առաջին հովիւը եղած է Շահակ վարդապետ Նազարէթեան, երկրորդը՝ Տ. Թէոդորոս քահանայ Իսահակեան.*

*Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը բարի գաղափարը յղացած է, ամսոյս 7ին իրիկունը, Տէր Աստ. քահանայի ձեռնադրութեան և իրենց եկեղեցւոյ հաստատութեան անդրանիկ տարեդարձը տօնելով, հոգեոր շարժում և ոգեւորութիւն յառաջ բերել ժողովուրդին մէջ: Տարեդարձի հանդիսութիւնը արդիւնաւոր ընելու համար՝ յատուկ պատրաստութիւններ տեսնուած են, և մեր կողմի եկեղեցիներու հոգաբարձութեանց և հովիւներուն ալ հրաւէր ղրկուած են: Ասանկով ի յայտ կը բերուին բարի դրացնութեան և Քրիստոնէական եղբայրութեան գնահատելի ընթացք:*

---

ԵԿԵՂԵՑԱԿԱՆ

## ԼՈՒՐԵՐ ՈՒ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ



*Եկեղեցասէր Տիկնանց Միութեան նախորդ տարուայ Վարչութեան անդամներն էին՝ Տիկնայք Սարա Շահպազեան, Սաթենիկ Սէֆէրեան, Մարիամ Գասպարեան, Մարիամ Տէմիրճեան, Խաթուն Սարգիսեան, Իզաբէլ Մելիքեան և Մարիամ Բանջարեան:*

*Նոր Վարչութիւնը ընտրուած է, բայց տակաւին կազմակերպուած չըլլալով, յաջորդ թուով պիտի ծանուցանենք անունները:*

---

*Օրբախնամ Տիկնանց Վարչութեան նոր անդամներն են՝ Օր. Ձաւյիկ Եագճեան, Տիկնայք Հայկանուշ Սարգիսեան, Նազլը Մաչարեան, Փառանձեան Օրբաթիկեան և Անուշ Շէհրէեան:*

*Նախորդ Վարչութեան անդամներն էին՝ Տիկ-*

նայր Այնիւ Մատղաշեան, Մարիամ Ճրախալեան, Հայկուհի Սահակեան, Նազլը Մանոյեան և Մէրի Գաբրիէլեան:

## ՀԻՒԱՆԴՆԵՐՈՒ ԱՑՑԵԼՈՒԹԻՒՆ

Հիւանդներ

Զարմայր Շէհրէեան, Պըրնէթ Հիւանդանոցին մէջ, ծանօթ հիւանդութեամբ կը տառապի տակաւին: —Վահան Ալթունեան եւ, օթոմոպիլի արկածի պատահած ըլլալով, նոյն հիւանդանոցին մէջ կը տառապի: Երկուքին ալ համբերութիւն և ապաքինում կը մաղթենք:

Ամուսնութիւն, փետրվար 2

Յակոբ Գրաճեան

Ռօզի Ղազարեան

Մկրտութիւն

Փետր. 2 Խաչատուր Յառոյեանի երախան—Մանուկ:

շխձխ

Փետր. 2 Յովհաննէս Նաճարեանի երախան—Խայաճան:

շխձգզգկե

Փետր. 3 Միհրան Մելիքեանի երախան—Մըկրտիչ:

չհեեէինեկէի

Փետր. 16 Լեւոն Խանչելեանի երախան—Գառնիկ:

եհիւբնկէեքիննէլոնքի

Մահագրութիւն

Փետր. 1ին, Մեռաւ Տիկին Տուտու Գէորգեան: Փետր. 7ին, Տր. Շահպազեանի երեխան՝ Արշալոյս: Փետր. 7ին Արուէն Պաղտասարեանի երախան Մարիամ:

## ԿԻՐԱԿԻ ՕՐ ՆՆՋԵՑԵԱԼ ՉԻ ԹԱՂՈՒԻՐ

Ամերիկեան եկեղեցիներ՝ նկատի ունենալով Կիրակի օր ննջեցեալ թաղելու անպատեհութիւնները, համաձայնութեամբ վերցուցած են այդ սովորութիւնը: Մեզի եղած գիտուցման մը վրայ, խոստացած ենք հետեւիլ իրենց, ու յարգելով այդ կարգադրութիւնը ննջեցեալ չի թաղել Կիրակի օր:

---

## ՊՍԱԿԻ ՀԱՄԱՐ ԱՐԳԻԼԵԱԼ ՕՐԵՐ

1.— Բոլոր Կիրակիներ:

2— Բոլոր Չորեքշաբթի և Ուրբաթ օրեր

3.— Հինգ Տաղաւարներու երկրորդ օրերը, որք նուիրուած են մեռելոց յիշատակին:

4.— Ծննդեան և Աւետման, Տեառընդառաջի, Աւետման և Համբարձման տօնի օրերը:

5.—Բոլոր Մեծ Պահոց օրերը եՋատկի առաջին Շաբաթը, այսինքն Բուն Բարեկենդանէն մինչեւ Նոր Կիրակի:

6.— Առաջաւորաց, ինչպէս նաև Վարդավառի Վերափոխման, Խաչվերացի, Յիսնակաց և Ծննդեան շաբաթապահոց հինգ օրերը:

---

## ՊՍԱԿԻ ՀԱՄԱՐ ԹՈՅԼԱՏՐԵԱԼ ՕՐԵՐ

1.— Ծննդեան Ութօրէքին մէջ, Յունուար 8-21, 12-25, հինգ օրեր:

2.— Յունվար 14-27էն մինչև Առաջաւորաց Բարեկենդանը:

3.— Առաջաւորաց Շաբաթ օրէն մինչև Բուն Բարեկենդան:

4—. Յինանց մէջ, Նոր Կիրակի Բշ. էն մինչև Վարդավառի Բարեկենդանը:

5.— Վարդավառի Գշ.էն մինչև Աստուածածնի Բարեկենդանը:

6.— Աստուածածնի Գշ.էն մինչև Խաչի Բարեկենդանը:

7.—Խաչի Գշ.էն մինչեւ Յիսնակաց Բարեկենդանը:

8.Յիսնակաց Բշ.էն մինչև Ծննդեան Բարեկենդանը:

Ծանօթ.— Եկեղեցական օրերը կ՚սկսին արեւու մարը մտնելէն ետքը. հետեւաբար՝ Կիրակի երեկոները կարելի է պսակ ընել, եթէ յաջորդ օրը ներելի է պսակի համար:

---

## ՏՕՆԱՑՈՅՑ

Մարտ — ձ•իզ

1. Ուր. Պահք. Յիշատակ Յովնանու Մարգարէին:
2. Շբ. ԱԿ. Տօն Սրբոյն Սարգսի Զօրավարին և որդւոյ նորա Մարտիրոսին և Զօրեքտասան Զինուորացն: — շխձհ
3. Կիր. ԲՁ. Զրգ գկնի Ծննդեան:
4. Բշ. ԲԿ. Տօն Սրբոց Ատովմեանց Զօրավարացն:
5. Գշ. Տօն Սրբոց Սուքիասեանց վկայիցն:
7. Եշ. ԴՁ. Տօն Սրբոցն Ոսկեանց:
9. Շբ. ԱՁ. Տօն Սրբոյն Իսահակայ Հայրապետին:
10, Կիր. ԱԿ. Միջին Կիրակի:
11. Բշ. ԲՁ. Տօն Սրբոցն Մարկոսի Եպիսկոպոսին, Պիոնի Քահանային և այլն:
12. Գշ. ԲԿ. Տօն Սրբոց Ղեւոնդեանց Քահանայիցն:
13. Դշ. ԳՁ. Պահք: Երեկոյին Նախատօնակ:
14. Եշ. ԳԿ. Տօն Սրբոց Վարդանանց Զօրավարացըն մերոց ՌԼՁ վկայիցն, որք կատարեցան ի մեծ պատերազմին: Ազգային Տօն: Հանգստ-



*գիտ վաան համօրէն ննջեցելոց Ազգիս Հայոց ։*

16, *Շբ . ԴԿ . Տօն Սրբոցն Կ . Փօլսոյ Սուրբ Ժողովոյն ձՍ հայրապետացն ։—Երեկոյին փակեալ խորան ։* գշխձցզզքցև

17 . *Կիր . ԴԿ . Ա . Կիրակի Մեծ Պահոց ։* Բուն Բարեկենդան ։ ոճօ

20 . *Գշ . ԲՋ . Գ . օր Մեծ Պահոց ։ Սկիզբն ապաշխարութեան կարգին ։*

23 . *Շբ . ԳԿ . Զ . օր Մեծ Պահոց , բայց տօն է Սրբոցն Թէոդորոսի Զօրավարին ։*

24 . *Կիր . ԴՋ . Է օր և Բրդ Կիրակի Մեծ Պահոց ։* Արտաքսման ։

30 . *Շբ . ԳՋ . ԺԳ . օր Մեծ Պահոց , բայց Տօն է Սրբոցն Կիւրղի Երուսաղեմայ Հայրապետին , և միւս Կիւրղի Եպիսկոպոսին , և մօրն նորա Աննային ։* Փ:

31 . *Կիր . ԳԿ . ԺԴ . օր և Դրդ Կիրակի Մեծ Պահոց ։* Անառակին ։

---

## Ս . ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ ԿԱՐԳԵՐԸ

---

Կիրակի առաւօտ —

| | ժամեր |
|---|---|
| *Սկզբնաւորութիւն Ժամերգութեան* | 9 |
| *Սկզբնաւորութիւն Պատարագի* | 10 ·30 |

Պատարագ չեղած Կիրակիներ —

| | |
|---|---|
| *Սկզբնաւորութիւն Ժամերգութեան* | 10 |
| *Քարոզը մօտաւորապէս* | 11 ·30 |

Կիրակնօրեայ Դպրոց —

| | |
|---|---|
| *Սկզբնաւորութիւն դասախօսութեանց* | 9 ·30 |
| *Վերջ դասախօսութեանց* | 10 ·30 |

Ծնր · — *Կիրակնօրեայ Դպրոց կը յաճախեն 150է աւելի երկսեռ աշակերտներ, որոնց կը դասախօսեն տասը ուսուցիչներ, որոնք աշակերտաց հետ միասին միշտ ներկայ կըլլան եկեղեցական պաշտամանց ։*

———0———

## ՀԱՅԿԱԿԱՆ ԴՊՐՈՑ

*Հայ դպրոցը բաց է ամեն օր կէսօրէ վերջ ժամը 2 ·30է 5, բացի Շաբաթ և Ամերիկեան արձակուրդի օրերէն ։ Ուրբաթ օրերը եկեղեցական և ազգային երգեր սորվեցնելու յատկացուած է, իսկ միւս չորս օրերը Հայերէն լեզուի ուսուցման ։ Տեսուչ մը և երեք օրիորդներ կը դասախօսեն ։ Դպրոցի մուտք տուրքն է մէկ տոլար ամբողջ շրջանին համար ։*

## ԴՊՐԱՑ ԴԱՍ

*Դպրաց Դասուն եկեղեցական և ազգային երգեր կուսուցուին Ուրբաթ երեկոները՝ ժամը 7 ·30-9 ։ Այս դասերուն կրնայ աշակերտիլ ամեն Հայաստանեայց Եկեղեցւոյ զաւակ անխտիր, առանց սեռի և տարիքի խտրութեան ։*

---

## ՄԿՐՏՈՒԹԻՒՆ ԵՒ ՊՍԱԿ

*Մկրտութիւն կը կատարուի սովորաբար Շաբաթ օրեր, և բացառիկ պարագաներու տակ՝ Կիրակի առաւօտ ժամը 8-ին ։ Իսկ պսակները, օրէնքով արգիլուած օրերէն դուրս, որ և է ատեն կրնան ըլլալ ։ Բայց զգուշանալու է Շաբաթ երեկոները հարսանիք ընելէ ։ Թէ մկրտութեան և թէ պսակի համար Հոգաբարձութեան ու Հովուին կանխաւ լուր տալ անհրաժեշտ է ։*

Ուշադրութիւն · — *Վարչական մարմիններ լաւ կընեն եթէ Կիրակի օրեր ժողովներով չզբաղեցնեն եկեղեցւոյ հօտը, որպէս զի այցելութիւններ ընէ ։*

---

Սուրբ Երրորդութիւն Եկեղեցւոյ

## ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԳՐԱԴԱՐԱՆԻ ՄԻՈՒԹԻՒՆ

| *Գրադարանը բաց է՝* | ժամեր |
|---|---|
| Երեքշ . և Հինգշ . երեկոները | 7 ·30—9 ·30 |
| Կիրակի օրեր կէս օրէ վերջ | 2—4 |

*Գրադարանի Միութիւնը կըստանայ այժմ 15 ազգային թերթեր, ու 500ի չափ մեծ ու փոքր հայերէն գրքեր ունի ։*

---

ԷՋՄԻԱԾԻՆ

Կրօնա-Բարոյական Ամսաթերթ

Հրատարակութիւն՝

ՎԱՐԴԱՆ Ծ . ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ

Բաժանորդագին՝ տարեկան մէկ տոլար

*Նամակ, ծրար են . ղրկուելու են վարի հասցէով ։ Բաժանորդագինը կանխիկ է ։*

VOL I, NO ·3, MARCH, 1918 PRICE 10 CENTS

ETCHMIADZIN

A RELIGIOUS MONTHLY PAPER

PUBLISHED BY

REV. V. V. KASPARIAN

P. O. Box 290 Fresno, Cal.

SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR